1916

№ 18.—Մայիսի 1

ԱՌԱՋԻՆ ՏԱՐԻ

# ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ-ԳՐԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

10 ԿՈՊԷԿ | ԼՈՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ ԿԻՐԱԿԻ ՕՐԵՐԸ | 10 ԿՈՊԷԿ

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ** տարեկան 4 ռուբլի, կէս տարուան 2 ր. 50 կ., Բարեգործական Ընկերութեան անդամների, հայ դպրոցների, ուսուցիչների և հասարակական հիմնարկութեանց համար՝ տարեկան 3 ր., կէս տարուան 2 ր.: Արտասահման՝ տարեկան 5 ր., կէս տարուան 3 ր.

**ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ՝** Թիֆլիս, Արտատարդեան հրապար. № 7. Հեռախօս № 29.

Պոստի հասցէն.—Тифлисъ, „Амбаваберъ". Tiflise, Rédaction du journal „Hambavaber".

**ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ՝** տողին 10 կոպ.

Խմբագրութիւնը բաց է առաւօտեան ժամի 10—2 բացի կիրակի և տօն օրերից: Տպագրելու ուղարկուած ձեռագրերը կարող են ենթարկուել փոփոխման և կրճատման:

Տպագրութեան համար անյարմար ճանաչուած մեծ յօդուածները պահւում են վեց ամիս խմբագրատանը, իսկ փոքրերն անմիջապէս ոչնչացւում:

Տպագրութեան համար անյարմար թղթակցութեանց և յօդուածների առթիւ խմբագրութիւնս պարտաւոր չի համարում գրաւոր բացատրութիւններ տալ:

*Փախստականներին օգնող հայկական կազմակերպութիւնների համագումարը կազմակերպող Կոմիտէն այսու յայտնում է ի գիտութիւն բոլորի, որ*

## ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ԲԱՑՈՒՄԸ

**ՏԵՂԻ ԿՈՒՆԵՆԱՅ**

### ՊԵՏՐՈԳՐԱԴՈՒՄ ՄԱՅԻՍԻ 10-ԻՆ, ԺԱՄԸ 2-ԻՆ:

*Նախապատրաստական ժողովը Համագումարի անդամների իրար հետ ծանօթանալու համար կը կայանայ մայիսի 9-ին: Ցանկալի է, որ պատգամաւորները Պետրոգրադ հասնեն մայիսի 8-ին: Պետրոգրադ ժամանելուց յետոյ՝ տոմսակ ստանալու համար պէտք է դիմել* Спасская, 15, кварт. 2.

*Հրաւիրում են գաղթականներին օգնող բոլոր հայ կազմակերպութիւնները հեռագրով յայտնել Կազմակերպող Կոմիտէին պատգամաւորների կայացած ընտրութեան մասին իր ժամանակին Մոսկուայի Հայկական Կոմիտէին մինչև մայիսի 5-ը, իսկ մայիսի 5-ից յետոյ՝* Петроградъ, Спасская, 15, Организацiонный Комитетъ Армянскаго съѣзда.

*Խնդրում ենք այն կազմակերպութիւններից, որոնք ինչ ինչ պատճառներով ցարդ չեն ստացել հեռագրով կամ պոստով հրաւէրներ, բարեհաճեն յայտնել Համագումարին պատգամաւոր ուղարկելու ցանկութիւնը Մոսկուայի Հայկական Կոմիտէի հասցէով:*

*Յայտնում ենք ի գիտութիւն բոլորի, որ Ներքին գործերի Նախարարի թոյլտւութեան համաձայն՝ փախստականներին օգնող բոլոր հայկական կազմակերպութիւնները առանց խտրութեան իրաւունք ունեն մասնակցելու Համագումարին:*

*ԿԱԶՄԱԿԵՐՊՈՂ ԿՈՄԻՏԷՏ*

ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ



# Համաշխարհային պատերազմը

## ՏԱՃԿԱԿԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ

Կովկասեան ճակատում *Տրապիզոնի գրաւումից յետոյ պատերազմական գործողութիւնների մի զգալի ընկումն տեղի ունեցաւ։ Որքան մեր զօրքերը խորանում էին դէպի Թշնամու երկրի ներսը, այնքան նրանց դրութիւնը դժուարանում էր։ Աւերուած երկրում ուտեստ հայթհայթելը անհնարին էր, իսկ ճանապարհներն ու հաղորդակցութեան միջոցներն էլ թիկունքի և առաջաւոր դիրքերի միջև այնքան անկատար, որ զօրքի մատակարարութիւնը չէր կարող ցանկալի չափերով իրագործուել։ Միւս կողմից՝ թիւրք զօրքերը հետզհետէ թարմանում էին Գալիպոլիից եկած նոր զօրքերով, և որովհետև նրանց պարենաւորման գործն աւելի է յարմարեցրած իրենց երկրի պայմաններին և թիկունքի ճանապարհներն աւելի կանոնաւոր քան մերը, այդ պատճառով էլ բնական կերպով ուժերի յարաբերութիւնը կռուող կողմերի միջև սկսում է փոխուել ի նպաստ թիւրքերի։*

*Այս պայմաններում ապրիլի 6-ից սկսած թիւրքերը գրեթէ ամբողջ Կովկասեան ճակատի վրայ ընդհանուր յարձակման են դիմում։ Սկսում են մի շարք տաք կռիւներ Տրապիզոնից արեւմուտք, Աշկալայի, Բայբուրդի, Երզնկայի, Մուշի և Բաղէշի շրջաններում։ Մինչև ամսոյս 20-ը ռուսները մեծ մասամբ պաշտպանողական կռիւներ էին մղում՝ տեղ-տեղ յետ նահանջելով դէպի աւելի ամուր դիրքեր։ Սակայն այդ թուականից սկսած նրանք մի քանի կարևոր գծերի վրայ, գլխաւորապէս հարաւային և կենտրոնի շրջաններում, սկսեցին հակայարձակողական գործողութիւններ, որոնք ընդհանուր առմամբ յաջողութեամբ վերջացան։ Ներկայումս կռիւները կենտրոնացած են Բաղէշի և Երզնկայի գծերի վրայ։ Պատերազմին մասնակցած մարդկանց միահամուռ վկայութեամբ թիւրք այս նոր զօրքերը դիմադրական մեծ կորով են ի յայտ բերում. այնպէս որ մինչև այդ կորովը կոտրելը և նորից կռիւների նախաձեռնութիւնը լիովին իրենց ձեռքն առնելը ռուսները բաւական ժամանակի կարիք պէտք է ունենան։*

*Կռիւները բաւական արիւնահեղ բնոյթ ունեն։ Այդ բանը երևում է և այն ծանր կորուստներից, որ ունեցել է հայկական 1 կամաւորական գունդը Բաղէշի կռիւների ժամանակ։*

Պարսկական ճակատում *երկարատև դադարից յետոյ կռիւներն սկսել են կենդանանալ։ Թիւրքերը թէ Ուրմիայի և թէ Քիրմանշահի շրջաններում առաջխաղացութեան փորձեր են անում։ Ուրմիայի շրջանում ռուսներին յաջողուել է կասեցնել թշնամու շարժումը, իսկ Քիրմանշահի շրջանում զօրավար Բարաթովը վերջին օրերս հակայարձակումների անցնելով՝ գրաւել է և Կասրիշիրին քաղաքը, Բաղդադից 15 վերստ հեռու, ուր մերոնց ձեռքն է անցել բաւական քանակութեամբ պատերազմական աւար։ Տաճիկները, ըստ երևոյթին, Պարսկաստանի համար լուրջ ռազմական ծրագրեր ունին և զօրքեր են կենտրոնացրել Խանիկինի մօտ։ Այդ զօրքերի թիւը մօտիկ ապագայում երևի աւելի կմեծանայ ի հաշիւ Միջագետքում անգլիացիների դէմ գործող զօրագնդերի, և Բարաթովի համար պատերազմական ծանր խնդիրներ կառաջանան։*

Միջագետքի ճակատը *իր վրայ դրաւեց ամենքի ուշադրութիւնը վերջին երկու շաբթուայ կարևոր անցուդարձով։ Թիւրքերը Գալիպոլիի հոգսից ազատուելուց յետոյ բաւական զօրքեր էին կենտրոնացրել անգլիացիների դէմ Ֆոն-դեր Հոլց փաշայի հրամանատարութեան տակ։ Անգլիացիների դրութիւնը, որ առանց այն էլ շատ նախանձելի չէր, սրա շնորհիւ աւելի ևս վատթարացել էր։ Վերջիններս, ինչպէս յայտնի է, Միջագետքում երեք բաժան-բաժան ջոկատ* (ОТРЯДЪ) *ունէին, մէկը գեն. Տաուսէնդի հրամանատարութեան տակ, որ անցեալ տարուայ նոյեմբերին Կուտելամար գիւղում շրջապատուել էր թիւրքերից, երկրորդը զօրավար Էյլմերսի ղեկավարութեամբ, որ յունուարին ուղարկուել էր ազատելու Տաուսէնդին, բայց չկարողանալով նրան հասնել, պաշարուել էր Եսսինի դիրքերում, Կուտից 12 վերստ արևելք և երրորդը Միջագետքի անգլիական զօրքերի ընդհ. հրամանատար զօրավար Լեքի առաջնորդութեամբ, որ ղրկուած էր ազատելու պաշարուած ջոկատները։ Լեք զօրավարն ամսիս 4-ին յարձակուեց թիւրքերի վրայ Տիգրիսի աջ ափին և նրանց սոսկալի ջարդ տուեց. անգլիական դիրքերի վրայ 3—4 հազար թշնամու դիակ էր թափուած։ Սակայն յաջորդ օրը թիւրքերը խոշոր ուժերով հակայարձակման դիմելով՝ յետ մղեցին նրան գրաւուած դիրքերից և մինչև անգամ նրա զօրագիծը ճեղքեցին։ Թէև Լեքը մի քանի յաջող զօրաշարժերով կարողացաւ կասեցնել թիւրքերի առաջխաղացութիւնը, բայց և այնպէս ստիպուած էր թողնել Տաուսէնդին ազատելու միտքը։ Վերջինս չափազանց նեղուած էր ռազմամթերքի և մանաւանդ ուտեստի պակասութիւնից։ Ամսոյս 11-ին անգլիացիք փորձ արին մի նաւով*

*նրան պաշար հասցնելու, սակայն նաւը ծանծաղուտի պատահեց և Կուտից 4 մղոն հեռու կանգնեց։ Այնուհետև Տաունսէնդի դրութիւնը անյուսալի դարձաւ և ամսոյս 15-ին նա իր ամբողջ ջոկատով անձնատուր եղաւ թիւրքերին, նախապէս ոչնչացնելով ռազմամթերքի մնացորդը և զէնքերը։ Նրա ջոկատում կային մօտ 3000 անգլիացի և 6000 հնդիկ զինուոր, ընդամենը 9000 հոգի։ Այս տխուր իրողութիւնը կարևոր է ոչ միայն այն տեսակէտից, որ դաշնակից զօրքի այդքան մի բազմութիւն անգործութեան է դատապարտւում, այլ և այն տեսակէտից, որ նրա դէմ գործող թիւրքական զօրքերն ազատւում են և կարող են Պարսկաստան ուղարկուել և ռուսների առաջխաղացութեան դէմ լուրջ խոչընդոտներ յարուցանել։ Այժմ անգլիացիք պէտք է օր առաջ նոր զօրքեր հասցնեն Միջագետ. այլապէս ոչ միայն մեր պարսկական էքսպեդիցիան անյաջողութեան կհանդիպի, այլ և Միջագետքի անգլիական զօրքերը կվտանգուեն...*

**Սև ծովի վրայ** *վերջին շաբաթներս ռուսաց սուզանաւերը վերսկսել են թշնամու պարենակիր նաւերի հետապնդումը։ Երկու անգամ նրանք թշնամուն հալածելով հասել են Վոսփորի նեղուցը և այնտեղ երկու շոգենաւ և մի քանի առագաստանաւ խորտակել։ Սակայն չնայած Սև ծովի վրայ ռուսների ունեցած ուժերին՝ «Բրեսլաու» յածանաւը անցեալ շաբաթ դուրս գալով նեղուցից ռմբակոծեց Եւպատորիա կուրորտը։ Այս ձեռնարկի ռազմական նշանակութիւնը շատ չնչին է ի հարկէ. սակայն թշնամու յանդգնութեան և նրա դէմ գործող ուժերի անբաւարար աչալրջութեան տեսակէտից Եւպատորիայի ռմբակոծութիւնը որոշ տպաւորութիւն թողեց հասարակութեան վրայ։*

### ԱՒՍՏՐՕ-ԳԵՐՄԱՆԱԿԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ

**Ռուսական ճակատում** *գարնանային կռիւների նախանշաններն են երևում միայն։ Ամիսներից ի վեր խօսում են այն մասին, որ գերմանացիք պատրաստւում են այս ճակատի հիւսիսային գծերի վրայ վերսկսելու ընդհանուր յարձակումը։ Ըստ երևոյթին այժմ այդ նախապատրաստական աշխատանքներն աւարտուած են, ուստի և թշնամին սկսել է եռանդուն հետախուզական գործողութիւններ Ռիգա-Ֆրիդրիխշտադտի և Դուինսկի շրջանում։ Առ այժմ ռուսների մասնակի յարձակումները յաջողութեամբ յետ են մղում գերմանացիների մասնակի յարձակումները։*

**Ֆրանսական ճակատում** *կռիւները վերարծարծուեցին Վերդէնի տակ, կարելի է ասել աննախընթաց թափով։ Երկու շաբթից աւելի է ինչ գերմանացիք կծկուել էին իրենց խրամատներում և կենդանութեան նշան չէին ցոյց տալիս։ Այս բանը շատերին ենթադրել էր տալիս, թէ գերմանացիք կամաց-կամաց ուզում են թողնել Վերդէնի գժբաղդ ձեռնարկը։ Բայց ահա ապրիլի 21-ին նրանք սկսեցին իրենց գործողութիւնները մրրկային թնդանօթամարտով և խտաշար հետևակազօրի յարձակումներով։ Գործողութիւնների գլխաւոր նպատակն է 304 կոչուած բարձրութեան տիրանալը։ Սկզբում գերմանացիք կարողացան ֆրանսացիների մի քանի խրամատ գրաւել. սակայն շուտով յետ մղուեցին դէպի իրենց նախկին դիրքերը սարսափելի կորուստներ կրելով։ Կռիւները շարունակւում են դեռ կատաղի թափով։*

***

## Ներքին տեսութիւն

### ՍՈՒԽՈՄԼԻՆՈՎԻ ՁԵՐԲԱԿԱԼՈՒՄԸ

—

*Ապրիլի 20-ին սենատոր Ի. Ա. Կուզմինի կարգադրութեամբ ձերբակալուեց նախկին մինիստր գեն. Սուխոմլինով, որ մեղադրւում է իբրև պետական դաւաճան. օրէնքով դաւաճանութեան մէջ մեղաւոր ճանաչուողը ենթարկւում է մահուան պատժի կամ տաժանակիր աշխատանքի ցմահ։*

*Սուխումլինովը բանտարկուած է Պետրոպաւլովսկի բանտում։*

*Նրա բնակարանում խուզարկութեան ժամանակ գտնուել են գրութիւններ և ուրիշ փաստաթղթեր։*

*Քննութիւնը կատարում է սենատոր Բոգորոդսկի, որը առաջ Թիֆլիսի դատաստանական պալատի նախագահ էր։*

*Սուխումլինովը խնդրել է քննիչին՝ հարցնել իր վկաներ իր անմեղութեան, նախկին նախարարներից և իրեն պաշտօնակիցներից։*

*Ոչ ոքի թոյլ չէ տրւում նրա հետ տեսակցութիւն ունենալու։*

*Սուխոմլինովի գործը, ինչպէս նկատւում է, կապ պէտք է ունենայ գնդապետ Մեասոեդովի գործի հետ, որը մեղադրուեց իբրև դաւաճան և զինուորական դատարանի վճռով գնդակահարուեց։*

*Քննութիւնը կատարւում է շատ արագ և ենթադրւում է, որ $1\frac{1}{2}$ ամսուայ ընթացքում կը վերջանայ։*

### ԿՈՎԿԱՍԵԱՆ ԶԵՄՍՏՈՒՈՅԻ ՄԱՍԻՆ ԽՈՐՀՐԴԱԿՑՈՒԹԻՒՆ ՓՈԽԱՐՔԱՅԻ ՊԱԼԱՏՈՒՄ

—

*26-ին ապրիլի, երեքշաբթի օրը, Փոխարքայ Մեծ Իշխան Նիկոլայ Նիկոլայևիչի կարգադրութեամբ բացուեց նշանակուած խորհրդակցութիւնը Կովկասում զեմստվօ մտցնելու մասին։*

*Խորհրդակցութեան հրաւիրուած են Անդրկովկասի և ծովեզրեայ նահանգների ներկայացուցիչները, որոնց թիւը 146 հոգի է։*

*Պաշտօնական նիստը նշանակուած էր երեկոյեան, իսկ ցերեկը ժամի $11\frac{1}{2}$ համագումարի անդամները Մեծ Իշխան Նիկոլայ Նիկոլայևիչի և Մեծ Իշխանուհի Անաստասիա Նիկոլայևնայի կողմից հրաւիրուած էին ներկայանալու՝ ծանօթանալու համար և նախաճաշիկի։*

*Որոշած ժամին Պալատ հաւաքուեցին խորհրդակցութեան անդամները. դահլիճի մուտքում նրանց ընդունում էին սիրալիր կերպով Օգոստափառ Փոխարքան և նրա ամուսինը։*

*Նախաճաշիկի ժամանակ Մեծ Իշխանն առաջարկեց Կայսրի կենացը, որը ընդունուեց որոտընդոստ ուռաներով. Թիֆ. նահանգական ազն. պարագլուխ իշխ. Արխաղի առաջարկեց Փոխարքայի կենացը, որը նոյնպէս ընդունուեց ուռաներով. Փոխարքան առաջարկեց խորհրդակցութեան անդամների կենացը։*

*Նախաճաշիկը վերջանալուց յետոյ հիւրերը հրաւիրուեցին Պալատի միւս դահլիճները սուրճի։ Այդ ժամանակ Ամենայն Հայոց Կաթողիկոսի ներկայացուցիչ Սրբազան Բագրատ եպիսկոպոսը*

բաղդ ունեցաւ խօսակցութիւն ունենալու Մեծ Իշխանի հետ և մատուցեց Վեհափառի ողջոյնը։

Մեծ Իշխանը խնդրեց յայտնել Վեհափառին շնորհակալութիւն և հարցափորձ արաւ նրա առողջութեան մասին։

Նախաճաշիկի վերջը խորհրդակցութեան անդամները Պալատի այգում լուսանկարուեցին Մեծ Իշխանի հետ և ցրուեցին մինչև նիստը։

Երեկոյեան ընդարձակ Սպիտակ դահլիճը շքեղօրէն լուսաւորուած էր։ Ճիշտ ժամը 9-ին նիրս մտաւ Փոխարքան, իր հետ ունենալով Վրաստանի էկզարխ Պլատոն արքեպիսկոպոսին, իր օգնական իշխ. Օրլովին, սենատոր Միլիւտինին և այլոց։

Խորին լռութեան մէջ Փոխարքան արտասանեց հետևեալ ճառը.

Պարոններ.

Ամենից առաջ դիմում եմ ձեզ սրտագին անկեղծ ողջոյնով։

Ստանձնելով Նորին Կայսերական Մեծութեան փոխանորդի պաշտօնը Կովկասում և ծանօթանալով տեղական գլխաւորագոյն պայմանների հետ, Ես եկայ այն համոզման, որ ռուսաց պետութեան այս հարստագոյն մասի արտադրիչ ոյժերի բարձրացման համար՝ անհրաժեշտ է զարգացնել շուտով նրա ազգաբնակութեան ինքնագործունէութիւնը, որպէս զի ոգևորուած սիրով դէպի երկիրը՝ աշխատանքը մտցնի ստեղծագործ սկզբունք տեղական կեանքի բոլոր կողմերի մէջ։

Փոխարքայական վարչութեան մէջ արդէն պատրաստուած է ընդարձակ նիւթ՝ Անդրկովկասում զեմստուօ մտցնելու հարցի մասին, բայց համապատասխան օրինագծի անյապաղ մշակումից առաջ Ես հարկաւոր համարեցի հնարաւորութիւն տալ ձեզ, տեղական մարդկանց, լրացնել այդ նիւթը իրանց լայն փորձառութեամբ և գիտութեամբ։

Կովկասի առանձին մասերի տնտեսական պայմանների չափազանց բազմազանութիւնը և նրա ազգաբնակութեան բազմալեզուութիւնը Ինձ համար շատ բարդացնում են առաջադրուած խնդիրը՝ կառուցանել զեմստուական ռեֆորմի օրինագիծը բոլորովին կենսական և ոչ տեսական հիմունքի վրայ։

Ձեզանից է կախուած, պարոններ, թեթևացնել այդ խնդրի իրագործումը։ Դուք, տեղական գործիչներդ, պրակտիկայի և կեանքի մարդիկդ, տուէք Ինձ ձեր դատողութիւններով այն նիւթը, որ կը լուսաբանէ երկրի ազգաբնակութեան իսկական կարիքները։

Դուք չէք կարող կասկածել Իմ համակրութեան մէջ Անդրկովկասում զեմստուօ մտցնելու մասին։ Դրա ապացոյցներից մէկը՝ ներկայ խորհրդակցութեան գումարումն է։

Բայց կարող են լինել զանազան հայեացքներ խորհրդակցութեան ենթակայ աշխատութիւնների բնաւորութեան մասին։

Կեանքի փորձառութիւնը ցոյց է տալիս, որ ձգտումը՝ հասնել միանգամից շատ բանի՝ յաճախ անիրագործելի է. ուստի Ինձ աւելի նպատակայարմար է թւում դնել այժմ հաստատ հիմք զեմստուական ինքնավարութեան համար Անդրկովկասում, համաձայնեցնել նրան, հնարաւորութեան սահմաններում, Ռուսաստանի ներքին նահանգների զեմստուօյի արդէն փորձուած ձևերի հետ։

Ի հարկէ, տեղական առանձնայատկութիւնները կարող են անհրաժեշտ կացուցանել մտցնել այդ ձևերի մէջ մի քանի փոփոխութիւններ. ապա ինքը ժամանակը ցոյց կը տայ, թէ ինչ պէտք է լրացնել երկրի զեմստուական հաստատութիւնների շինութեան մէջ. և այս ժամանակ, ամենաքիչ սխալներով. կարող են անուել բոլոր իսկական հարկաւոր փոփոխութիւնները։

Մանաւանդ հարկաւոր է մեզ հոգ տանել այն մասին, որ զեմստուական ինքնավարութեան ծրագրուող ձևերը համապատասխան լինեն ժողովրդի հարկավճարման ոյժերին, յիշելով որ նրանց չափազանց լարումը կարող է ցաւալի հետևանքների հասցնել։

Անձամբ Ես շատ բան եմ ակնկալում Կովկասի համար ապագայ զեմստուօյից. ենթադրելով որ միայն պետական և զեմստուական հաստատութիւնների միաբան աշխատութիւններով կարող է կատարուել, մօտաւոր տարիներում, ստեղծագործող աշխատութիւն, անհրաժեշտ՝ սքանչելի կովկասեան երկրի կեանքի բոլոր կողմերի զարգացման համար, երկրի, որ շտեմարանել է իր մէջ անսպառելի հարստութիւններ՝ դեռ քիչ շահագործուած մեր հայրենիքի բարօրութեան համար։

Հաւատանք, պարոններ, որ երկրի ազգաբնակութիւնը դէպի զեմստուական բազմազան աշխատութեան գրաւումը՝ կը նպաստէ նրա կեանքի խաղաղ կենցաղին, պաշտպանելով նրան որևէ յուզմունքներից և անկարգութիւններից։

Կայ և մի այլ միտք, որի վրայ Ես կը կամենայի առանձնապէս հրաւիրել ձեր ուշադրութիւնը։

Դժբաղդաբար, ոչ ոք մեզանից չէ կարող հերքել գոյութիւնը ազգային ընդհարումների, որոնք պատճառել են անցեալում շատ վնասներ երկրի ազգաբնակութեանը. և ի հարկէ, մենք ամենքս միակերպ, ջերմագին ուրախ կը լինէինք տեսնել անհետացումը ընդմիշտ այդ ցաւալի տարաձայնութիւնների։

Իմ խորին համոզմունքով՝ միահամուռ աշխատութիւնը զեմստուական գործում ամենալաւ միջոցը կը հանդիսանայ այդ նպատակին հասնելու համար։

Թող կովկասեան մատաղ զեմստուօն ծառայէ ոչ թէ երկրի բազմաթիւ ազգութիւնների բաժանմանը, այլ նրանց սերտ մերձեցման ընդհանուր շահերի հողի վրայ։

Ինձ կարող են ասել, թէ այն իդէալը, որ Ես գծել եմ, դժուար է իրագործել կեանքի մէջ, բայց Ես համոզուած պատասխանում եմ,—այո, դժուար է ի բացակայութեան բարի կամքի. բայց անկեղծ ցանկութեամբ՝ այդ իդէալն անտարակոյս հասանելի է. Մանաւանդ, եթէ ամենքը հաւատան, որ երկրային իշխանութեան վերաբերմունքը Կովկասի ազգութիւններին թափանցուած է միատեսակ անաչառութեամբ և արդարութեամբ։

Եւ ուրեմն, պարոններ, ձեզ առաջադրուած է կատարել շատ կարևոր աշխատութիւն մեր մայրենի երկրի օգտի համար։

Կը ցանկայի մտածել, որ մենք համակուած ենք միատեսակ համոզմունքով, թէ զեմստուօն անհրաժեշտ է

*Կովկասի համար, բայց գեմստուօ ոչ գեմստուօյի համար, այլ ժողովրդի բարիքի համար։*

*Իմ հոգեկան ցանկութիւնը կայանում է նրանում, որպէս զի ձեր աշխատանքների հետեանքները պարզեն, որ ձեր և Կովկասի բարձր իշխանութեան միջև բացակայում է էական տարաձայնութիւն՝ առաջիկայ գեմստուօյին բարենորոգման բնոյթի նկատմամբ ունեցած հայեացքների մէջ։*

*Ներկայ գործում հայեացքների ամենամեծ մերձաւորութիւնը կըհանդիսանայ լաւագոյն գրաւականն անդրագոյն միահամուռ մեր գործունէութեան յօգուտ երկրի։*

*Եթէ դուք տաք կենսական նիւթ Կովկասում գեմստուօյին ռեֆորմի լինելութեան համար, ոչ միայն Ես անձամբ ձեզ սրտագին շնորհակալ կը լինեմ, այլ և ամբողջ երկիրը երախտագիտութեամբ կը յիշէ ձեր աշխատանքները։*

*Խնդրելով Աստծուն օգնել ձեզ և պսակել բարի աջողութեամբ ձեր կարեւոր աշխատութիւնը, հրաւիրում եմ խորհրդակցութեանը դիմել իր զբաղմունքներին։*

*Ժողովականները կեցցէներով ընդունում են Փոխարքայի ճառը։*

*Թիֆլիսի նահանգի ազնուականութեան պարագլուխ իշխան Արխազի և Թիֆլիսի քաղաքագլուխ Ալ. Խատիսեան շնորհակալութեան և երախտագիտութեան ճառեր են արտասանում և ողջունում Փոխարքայի քայլը՝ գեմստուօ մտցնելու Կովկասում և խնդրում են արկանել յոտս Նորին Կայսերական Մեծութեան՝ խորհրդակցութեան անդամների ամենահպատակային զգացումները։*

*Այս յայտարարութիւնը ընդունւում է որոտընդոստ ծափահարութիւններով։*

*Մի քանի րոպէ լռութիւնից յետոյ Փոխարքան կարդում է բնագիրը հեռագրի, որ պէտք է ուղղուի Թագաւոր Կայսրին, որ դարձեալ ընդունւում է որոտընդոստ ծափահարութիւններով։*

*Ապա Փոխարքան յայտնում է, որ խորհրդակցութեան նախագահութիւնը յանձնում է իր օգնական իշխան Օրլովին և հեռանում է էկզարխի հետ միասին։*

*Խորհրդակցութիւնը շարունակում է այնուհետև իր զբաղմունքը իշխան Օրլովի նախագահութեամբ։*

*Խորհրդակցութեան նիստում հարց ծագեց, թէ արդեօք Խորհրդակցութիւնը պարտաւո՞ր է հիմնուել 1890 թ. հրատարակած օրէնքի վրայ, թէ՞ ազատ է իր դատողութիւնների վերաբերմամբ և կարող է նոր հիմքերի վրայ դնել կովկասեան գեմստուօն, ի նկատի առնելով և վերոյիշեալ օրէնքը։ Առաջին տեսակէտը պաշտպանում էին իշխ. Արխազի և ուրիշները վրաց և թուրք պատգամաւորներից, իսկ հայ պատգամաւորները լուսաբանում էին, որ Խորհրդակցութիւնը ապագայ գեմստուօյի հիմքերը որոշելիս՝ պէտք է կաշկանդուած չը լինի Ռուսաստանում կիրառուող օրէնքով, և պէտք է ի նկատի առնի երկրի զանազան մասերի բնական, ազգագրական, տնտեսական և կուլտուրական առանձնայատկութիւնները, որոնց վերոյիշեալ օրէնքը բաւականութիւն չէ տալիս շատ էական մասերում։ Վիճաբանութիւնը ընդունեց սուր կերպարանք. Նախագահող իշխ. Օրլովը պարզեց, որ Խորհրդակցութիւնը ազատ է իր դատողութիւնների մէջ, որ 1890 թ. օրէնքը պարտաւորիչ չէ Խորհրդակցութեան համար, այլ միայն նրան ի նկատի պէտք է առնել։*

*Այս բացատրութիւնը վերջ տուաւ վիճաբանութիւններին։*

*Խորհրդակցութիւնը նախագահի առաջարկութեամբ անցաւ սեկցիաներ կազմելու խնդրին։*

*Որոշուեց կազմելու չորս սեկցիա.*

*ա) Ձեմստուօյի տիպի մասին,*

*բ) Ընտրողների ցէնզի և ընտրողական կուրիաների մասին,*

*գ) Ֆինանսական հարցերի մասին և*

*դ) Քաղաքների և նաւթային շրջանի մասին։*

*Հետեւեալ օրը սկսուեցին առաջին սեկցիայի զբաղմունքները։*

*Խորհրդակցութեան հայ անդամների ցուցակը.—*

*Հոգեւորականութեան կողմից՝ Սրբազան Բագրատ եպիսկոպոս, գերապատիւ ծայրագոյն վարդապետ Գարեգին։*

*Քաղաքագլուխներ—Թիֆլիսի պ. Ա. Խատիսեան, Երևանի—պ. Ս. Խաչատրեանց, քաղաքային դումաների ներկայացուցիչներ՝ —Թիֆլիսի պ.պ. Իսայ Դոլուխանեան, իշխ. Արղութեան-Երկայնաբազուկ և իշխ. Գ. Թումանեան.*

*Բաքուից պ. Խրիստ. Վերմիշեան.*

*Գիւղատնտեսական ընկերութիւնների ներկայացուցիչներ —Կովկասեան Կ ա յ ս ե ր ա կ ա ն—պ.պ. Տէր-Պետրոսեան, Հայկական—պ.պ. Աւետիս Սահակեան և Ս. Փիրալեան.*

*Բաքուից պ. Ալ. Սերեբրեակեան, նահանգական զէմսկի հողագէտներ—Գանձակից նահանգական գիւղատնտես պ. Ա. Կամսարական.*

*Դաղստանից պ. Վ. Վարդանեան.*

*Հողային-հարկարաժան տեսանների ներկայացուցիչներ—Գանձակից պ. Մելիք Բէգլարեան.*

*Ղարսից պ. Կոստանեան, Երևանից պ. Գերասիմ Կամսարական.*

*Բաքուի նաւթագործների ներկայացուցիչ պ. Ն. Տէր-Միքայէլեանց, նաւթագործերի համագումարի ներկայացուցիչներ պ. պ. Լ. Ղուլեանց, պ. Արշակ Պարոնեան, բորսաների ներկայացուցիչներ՝ Բաքուից պ. Թաղիանոսեանց.*

*Թիֆլիսի բիրժայից պ. Մ. Բերբերեանց.*

*Ընկերութիւնների ներկայացուցիչներ.—Հայոց Կուլտուրական Միութեան կողմից պ. Գէորգ Լազարեանց.*

*Կով. Հ. Բ. Ընկ.-եան.- պ. Սամսոն Յարութիւնեան։*

---

## ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆ ԽՄԲԱԳՐՈՒԹԵԱՆ ԿՈՂՄԻՑ

*Պետրոգրադում կայանալիք հայկական Համագումարի մասին հակասական լուրերը շփոթութիւն են առաջ բերել հասարակութեան մէջ։ Գաւառներից դիմում են մեզ և հարցնում, թէ արդեօք կայանալո՞ւ է մայիսի 10—12-ին Համագումարը, թէ ոչ։*

*Այս մասին կարող ենք ասել միայն այն, որ Կազմակերպիչ Յանձնաժողովը հեռագրում է, որ դժուարանում է յետաձգել, ի միջի այլոց, այն պատճառով, որ դուցէ յետաձգման դէպքում, ինչ ինչ ձեական արգելքներ առաջ գան։*

*Թիֆլիսի բոլոր հաստատութիւնների ներկայացուցիչները կրկին հեռագրել են Կազմակերպիչ Յանձնաժողովին և խնդրել, որ յետաձգուի Համագումարը մինչև յունիսի սկիզբը, որպէս զի հնարաւորութիւն ունենան մասնակցելու։ Այդ տեսակ դիմումն արուած է Բաքուի և ուրիշ կենտրոնատեղերից։ Պէտք է ենթադրել, որ Յանձնաժողովը կը յետաձգի, մանաւանդ որ Պետական Դումայի անդամ պ. Մ. Պապաջանեանցը, որը այժմ Թիֆլիսումն է գտնւում, յայտնել է, որ յետաձգման դէպքում նա Նորից կառավարութիւնից կը ստանայ թոյլտուութիւն առանց դժուարութիւնների։*

## ՏԱՃԿԱՀԱՅ ՈՐԲԵՐՆ ՕՏԱՐԱԶԳՈՒ ՈՐԴԵԳԻՐ

*Տաճկահայ որբերին Կովկասից հեռացնելու և այլ հայաբնակ վայրերում զետեղելու համար մեր ժամուլի մէջ արդարացի բողոք լսուեց, չնայելով որ այդ լինելու էր անշուշտ միայն ժամանակաւոր,*

*քանի որ այդ որբերը ոտքի կանգնելով պէտք է նորից իրենց բնակավայրերը վերադարձուէին։*

*Արդ՝ մի այլ աղէտ է ծառանում մեր առաջ։ Մենք գիտենք դէպքեր, երբ հայ անզաւակ, ունեւոր և պարկեշտ ընտանիքներ դիմել են Կ. Հ. Բ. Ը-թեան վարչութեան և ցանկութիւն յայտնել որդեգրել որբեր, բայց իրաւամբ մերժում են ստացել, որովհետև այդպիսիները այլ ևս ի հարկէ չէին վերադառնալու իրենց ծննդավայրը։*

*Այս բոլորից յետոյ միայն զարմանալ կարելի է, թէ ինչպէս հասուն մարդիկ, անշուշտ մարդասիրական ձգտումից դրդուած, սակայն ակամայ, հայութեան վնաս են հասցնում, և ռուս սպաներ, որդեգրելով և Ռուսաստան ուղարկելով հայ որբերին, ինչպէս կարդում ենք Ախալքալաքի գաւառի Սուլդա գիւղից ապրիլի 12-ին «Հորիզոն»-ի № 86-ում Արսէն քահ. Բլրցեանի գրած հետևեալ նամակում.*

*Զարմայր Եղոյեանը որ նոր էր վերադարձել գիւղս Հասան-Ղալայից, պատմեց ինձ հետևեալը. «Սարիղամիշի երկաթուղու կայարանում տեսայ երկու գնացք, որոնց մօտ գտնւում էին 18 հոգի հայ որբեր 6—10 տարեկան։ Որբերը բերուած էին Էրզրումի նահանգի Թիւրք բնակիչների մօտից և ռուս սպաների յանձնարարութեամբ յիշեալ երկու գնացքները պիտի տանէին Ռուսաստան սպաների անեցոց մօտ ապրելու իբրև հոգեզաւակ»։ Գ. Եղոյեանը աւելացնում է, որ ռուս մարդկանց ձեռքով դէպի Ռուսաստան շատ հայ որբեր են ուղարկուած Էրզրումի շրջանից։*

*Մեզ թւում է, որ սպաները երևի անտեղեակ են, որ ռուս կառավարութիւնն ինքը դրամ է տալիս հայոց ընկերութիւններին տաճկահայ որբերին խնամելու, այլապէս անհասկանալի է մնում նրանց այդ—կրկնում ենք—մարդասիրական, բայց հայութեան համար վնասակար քայլը։*

*Ուստի անհրաժեշտ է որ մեր որբախնամ ընկերութիւնները և մանաւանդ Վեհափառ Հայրապետը դիմեն ուր հարկն է, որպէս զի պատուէր տրուի զօրքին և մանաւանդ սպաներին, որ թուրքերի գազանութիւններից և կրօնափոխութիւնից իրենց ազատած որբերին յանձնեն Հայոց Հոգևոր վարչութեան և կամ որբախնամ ընկերութեանց։*

*Սկայ*

---

## ՇՕՇԱՓԵԼԻ ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆ

*Մեր ժողովրդի սև բաղդի այս օրերում ստիպուած ենք ծանր մտահոգութեամբ մեր միտքը դարձնել դէպի նրա մօտաւոր ապագան։ Արդեօք ինչպէս են անօրինելու հզօրները, փոքր ժողովուրդների բաղդը որոշողները կոտորածից ազատուած հայ ժողովրդի ապագան, արդեօք նոր հիասթափութի՞ւն, թէ՞ տանելի դրութիւն պիտի նրան բաժին ընկնի։ Արդեօք այսուհետև է՞լ հայի կեանքն ու պատիւը պիտի կախուած լինի մարդկայնութեան տարրական զգացմունքներից զուրկ վայրագ, արիւնռուշտ ցեղերի բարեհայեցողութիւնից։ Իրենց անցեալով աւելի աննշան ժողովուրդներ ազատուեցին շնորհիւ հզօրներին ցեղակից, դաւանակից լինելու հանգամանքին, յոյներն էլ ազատուեցին շնորհիւ նրանց նախնիքների հին, բարձր մշակոյթի։ Քաղաքակիրթ աշխարհը վերջապէս բաւական համարեց այդ ժողովրդի ստրկութիւնը։*

*Միայն հայերս ենք, որ մնացել ենք չէզոքացած, մեր միակ պաշտպանող, սահմռկեցուցիչ տառապանքների օրերին կարեկից ուշադրութեան արժանի։ Ահ, այդ վիրաւորական կարեկցութիւնը։ Մեծ պետութիւններից մի քանիսը շատ անգամ մեր թշուառութիւնը իրենց հաշիւները Թիւրքիայի հետ մաքրելու անարգ միջոց դարձրին։ Միայն վերջերս է, որ հայութեան բարեկամներն առանձին անշահասէր վերաբերմունք են ցոյց տալիս մեր բնաջնջուող ժողովրդին։*

*Ի՞նչ անենք, ինչպէս աւելի հետաքրքրենք մեր բաղդը անօրինողներին, ինչպէս աւելի ծանօթացնենք մեր անցեալ ու ներկայ կարողութիւններին, նրանց մէջ այն համոզմունքն առաջացնելու համար, որ այս ազգը հարուստ ձիրքերով օժտուած լինելով, արժանի է տանելի դրութեան. որ յանցանք է նրան այլ ևս ստրկական դրութեան դատապարտել։ Թւում է թէ՝ լաւ կլինէր, որ Պետրոգրադի համագումարի առիթով կամ աւելի ուշ, ըստ հնարաւորութեան, ցուցադրուէին այնտեղ մեր փախստականների արհեստների, նկարչութեան և այլն արտադրութիւնները։ Տեղեկութիւն կար, որ Մոսկուայում վանեցի կանանց ձեռագործները և ոսկերիչների արտադրութիւնները ցուցադրել են, բայց այն ժամանակ այս արհեստանոցներում նիւթեր շատ չըկային։ Հիմա արժէր աւելի բազմակողմանի ցուցահանդէս կազմակերպել Պետրոգրադում։ Ռուս ժողովուրդը նոր սկսել է հետաքրքրուել հայութեան անցեալով ու ներկայով, պէտք է իրական, շօշափելի բաւարարութիւն տալ այս խրախուսական պահանջին։*

*Յ. Տէր-Միրաքեան*

---

*Խմբագրութիւնս ստացել է Պետրոգրադից «Առաջին Հայկական Համագումար»-ի Կազմակերպիչ Կոմիտէից հետևեալ*

## «ՇՐՋԱԲԵՐԱԿԱՆ ՀՐԱՒԷՐԸ»

*Պետրոգրադի և Մոսկուայի Հայկական Կոմիտէները, 1915 թուի աշնանը Պետրոգրադում տեղի ունեցած միացեալ նիստերում, որոշեցին հրաւիրել հայ փախստականներին նպաստող կազմակերպութիւնների ներկայացուցիչների համագումար։ Այդ նպատակով վերոյիշեալ կոմիտէները դիմեցին Պետական Դումայի անդամ պ. Մ. Պապաջանեանին, որ նա հոգայ պատշաճաւոր թոյլտուութիւն ստանալու մասին։ Այժմ շնորհիւ յարուցուած միջնորդութիւնների, ներքին գործերի պ. Նախարարից և Նորին Կայսրական Մեծութեան Կովկասի Մեծ Իշխան Փոխարքայից ստացուած է համագումարի թոյլտուութիւնը. Նորին Սրբութիւն Ամենայն Հայոց Կաթողիկոսը տուել է այդ Համագումարին իր օրհնութիւնը։*

*Այդ միացեալ Կոմիտէների կողմից ընտրուած Կազմակերպիչ Կոմիտէն խնդրում է այն ազգային հաստատութիւնները, որոնք նպաստել են փախստականներին, ուղարկել իրենց ներկայացուցիչներին մասնակցելու վերոյիշեալ համագումարին, որ պիտի կայանայ Պետրոգրադում, 1916 թուի մայիսի տասին, տասնումէկին և տասներկուսին։*

*Հաղորդելով համագումարի պարապմունքների ծրագիրը, Կազմակերպիչ Կոմիտէն խոնարհաբար խնդրում է Ձեզ ուղարկել զեկուցումներ, համաձայն այդ ծրագրին, և տեղեկագիրներ Ձեր գործունէութեան մասին։*

*Զեկուցումներ պիտի ուղարկել վաղօրօք, որպէս զի նրանք ստացուեն Մոսկուայում ոչ ուշ, քան մայիսի 5-ը 1916 թ.*

*Կազմակերպիչ Կոմէիտէն իր պարտքն է համարում աւելացնել որ՝*

*1. Համագումարի նախընթաց օրը, այսինքն մայիսի 9-ին ժամը 2-ին, նշանակուած է նախապատրաստական ժողով՝ համագումարի անդամների փոխադարձ ծանօթութեան համար։*

*2. Համագումարի մուտքի տոմսակներ ստանալու է Պետրոգրադում, Սպասսկայա, 15, բնակ. 2.*

*3. Զեկուցումներ, տեղեկագիրներ և ամեն կարգի դիմումներ ու նամակներ պիտի ուղարկել մինչև մայիսի 5-ն Մոսկուայի Հայկական Կոմիտէին՝* (Москва, Армянскій пер. д. Армянской церкви), *իսկ մայիսի 5-ից յետոյ՝ Պետրոգրադի Հայկական Կոմիտէին՝* (Петроградъ, Спасская ул., д. 15 кв. 2). *Կազմակերպիչ Կոմիտէի անունով.*

*4. Այն կազմակերպութիւնները, որոնք այս կամ այն պատճառով չեն ստացել ներկայ հրաւիրագիրը, կարող են ուղարկել*

իրենց ներկայացուցիչներին, միայն անհրաժեշտ է նախօրօք հեռագրով տեղեկացնել այդ մասին Կազմակերպիչ Կոմիտէին, որպէս զի հնարաւոր լինի ստուգել տուեալ հաստատութեան իրաւունքը մասնակցելու համագումարին։

Ծանօթ. Ցանկալի է, որ իւրաքանչիւր հաստատութիւն ընտրի ներկայացուցիչ իր տեղի գործիչներից, որպէսզի Համագումարի կազմը լինի համազգային. Ամէն մի ներկայացուցիչ ունի մի ձայն, թէև ընտրուած լինի մի քանի հաստատութիւններից.

ԾՐԱԳԻՐ

1. Համագումարի Նախագահի, Նախագահի օգնականների և Քարտուղարների ընտրութիւնը։

2. Կազմակերպիչ կոմիտէի զեկուցումը։

3. Համագումարի պարապմունքների բաշխումը ըստ յանձնաժողովների (սեկցիաներ)։

4. Փախստականների օգնութեան գործը պատերազմի սկզբից, նրա ներկայ դրութիւնը։

5. Նպաստի աղբիւրները։

6. Նպաստի չափն ու ձևը՝ պարէնաւորումն, բնակարաններ, փոխադրութիւն, բժշկութիւն, հոգևոր և կրթական պէտքեր, իրաւաբանական օգնութիւն, հագուստներ, աշխատանքի որոնում, որբերի և աշխատանքի անընդունակների խնամք, դրամական փոխառութիւններ, վերաշինութիւն՝ ցանքս և այլն։

7. Փախստականների թիւը՝ ըստ հպատակութեան, պաշտօնի, սեռի, կրօնի, սկզբնական և այժմեան բնակութեան վայրերի։

8. Փախստականներին նպաստող հաստատութիւնների փոխյարաբերութիւնները։

9. Պատերազմից փախստականներին հասած վնասները։

10. Հայաստանի վերաշինութիւնը։

11. Հողի և կայքի խնդիրը Հայաստանում։

12. Սպառողական խանութներ, արտելներ, աշխատանքի տըներ և այլն։

13. Տեղեկատու Բիւրօներ։

14. Տեխնիկական և տնտեսական օժանդակութիւն։

15. Վիճակագրութիւն։

16. Փախստականների վերադարձը Հայրենիք։

17. Հայ կամաւորների խմբերի օգնութիւնը փախստականներին։

18. Ազգային կազմակերպութիւնների տեղեկագրերն և նախահաշուի ծրագիրներ։

19. Սկզբունքային խնդիրներ յարուցանող զեկուցումներ։

20. Համագումարի Խորհրդի անդամների ընտրութիւնը։

Կազմակերպիչ Կոմիտէ

Ծան. Կազմակերպիչ կոմիտէն պարտք է համարում մատնանշել ներքին գործերի մինիստրի հրատարակած կանոնադրութեան վրայ՝ „Руководящія положенія по устройству бѣженцевъ".

Ինչպէս խմբագրութեանս յայտնի է, Թիֆլիսի և Բագուի հայոց բոլոր ընկերութիւնները, լսում ենք և Երևանինը, յայտնել են հեռագրով, որ չեն կարողանայ մասնակցել Պետրոգրադի համագումարին և խնդրել են յետաձգել գէթ մինչև յունիսի սկիզբը։

---

## ԱՐՈՒԵՍՏԱԳԷՏՆԵՐԻ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆԸ ԵՒ ԱԶԳԱՅԻՆ

Հայ արուեստագէտների նոր ընկերութեան կազմակերպութիւնը թէր ու դէմ կարծիքների փոխանակութեան առիթ դարձաւ։ Ոմանք պաշտպանում են հայ արուեստագէտների անկախ, ինքնուրոյն կազմակերպութիւն ունենալու միտքը, ուրիշները դէմ են այդպիսի կազմակերպութեան։ Պատճառաբանութիւնների մասին խօսուած է «Համբաւաբեր»-ի այս համարի մամուլի բաժնում։

Վիճելի հարցի պատասխանը կը պարզուի, եթէ խօսենք ազգային գեղարուեստի գոյութեան խնդրի մասին առհասարակ։

Գոյութի՞ւն ունի ազգային հոգեբանութիւն. ազգային ստեղծագործութիւն։ Պատասխանը լինելու է դրական. մեր առօրեայ փորձը, անձնական տպաւորութիւններն ու դիտողութիւնները ցոյց են տալիս, որ նոյն դասակարգին և նման կրթութիւն ստացած երկու տարբեր ազգի անհատներ որոշ նուրբ տարբերութիւններ են ցոյց տալիս դէմքով, ճաշակով, բարոյական զգայունակութեամբ և հոգեկան այլ յատկութիւններով։

Ասում են, ինկատի ունենալով վերջին հինգ դարերի պատմութիւնը, թէ ֆրանսացի փիլիսոփայի միտքը սուր, դանող, փայլատակող է, թէ գերմանացի փիլիսոփայինը՝ հետևողական մինչև ծայրայեղը, համբերող, վերացական և դէպի անդրբնականը սաւառնող։ Ապա մի նայենք անգլիական փիլիսոփայութեան վրայ Բէկոնից սկսած, Լոք-Իումի վրայից, մինչև Սպենսէրը, որպիսի հետևողականութիւն ծրագրի, մեթոդի և փիլիսոփայական ընդհանուր ոգու փորձառականութեան (էմպիրիզմ), բնագիտական մեթոդ, օգտագիտութիւն (ուտիլիտարիզմ)։

Այժմ էլ մի հայեացք ձգենք գերմանական փիլիսոփայութեան վրայ Լայբնիցից սկսած մինչև այժմ կենդանի Վունդը։ Գլուխ պտտեցնող յանդուգն սիստեմներ, հայեցական (սպեկուլատիւ) մեթոդ, գերբնական հիմունք ունեցող բարոյագիտութիւն։

Տարօրինակ ոչինչ չը կայ. բազմադար պայմանները ստեղծելով ազգային ոգի, ստեղծել են նաև ուրոյն կուլտուրա։

Գեղարուեստը չէր կարող ազգային ոգու դրոշմը չը կրել իր վրայ։ Ամենից պարզ այստեղ է երևում ազգային ոգու առանձնայատուկ արտայայտութիւնը։

Խօսքը որովհետև նկարչութեան, արձանագործութեան և ճարտարապետութեան մասին է, այդ պատճառով էլ այդտեղից օրինակ բերենք։

15 և 16-րդ դարերում աշխատում էին իտալացի, գերմանացի, ֆլանդրացի նկարիչները, բայց որպիսի տարբերութի՜ւն. տարբերւում են իրարից նկարածների նիւթով և ընդհանուր ըմբռնմամբ։ Իտալացին մարդն է դարձնում գեղարուեստական խնդրի կենտրոնը, հոլանդացին՝ բնութիւնը և առօրեայ կեանքը։ Գերմանացին էլ է ուշք դարձնում մարդ նկարելու խնդրի վրայ, բայց նկատում են, որ նրա նկարած մարդը այլ կերպ է դուրս գալիս։ Ազգային շունչը ամեն տեղ գոյն ու որակ է տալիս գեղարուեստական ստեղծագործութեան։ Գեղարուեստագէտը պէտք է գիտակցօրէն քննի, ուսումնասիրի իր ազգային կեանքը, առանձնայատկութիւնները, պատմական ժառանգութիւնը, որպէս զի նա հողից կտրուած չը լինի, որպէս զի նա իր հոգու արտայայտութեանը աւելի որոշակի ձև տայ և ազդել կարողանայ այն հասարակութեան վրայ, որի մէջ և որի համար գործում է։

Այս վէճերի մէջ մի այլ հարց էլ արթնացաւ. գրականագէտները կարող են առանձին ընկերութիւն կազմել, որովհետև նրանց միացնողը լեզուն է, իսկ նկարիչները, արձանագործները, ճարտարապետները առանձին կարիք չունեն ազգային կազմակերպութեան, որովհետև նրանց կապողը ոչ թէ լեզուն է, այլ աչքը. իսկ եթովպացու և անգլիացու աչքերը նոյն կերպ են տեսնում գեղարուեստական ստեղծագործութիւնները։ Այս արդէն մի հիմնական սխալ է. ճիշտ է, որ լեզուն աւելի անհասկանալի է, քան նկարը կամ արձանը, բայց միանգամայն սխալ է պնդել, թէ եթովպացին և անգլիացին նոյն կերպ կ'ըմբռնեն նոյն գեղարուեստական գործը։ Միթէ սխալ ենթադրութիւն է կատարւում, թէ նկարը գեղարուեստօրէն ճաշակւում է միմիայն աչքի գունդը. խեղճ աչքը գոյներ է տեսնում. գեղարուեստական խորը վայելք է ունենում բովանդակութիւններով հարստացած, կրթուած հոգին։ Այն նկարը, որ հիացնում է անգլիացուն, կարող է բոլոր եթովպացիների ծիծաղը շարժել։ Վագների երաժշտութիւնը մինչև այժմ էլ հիմք չի գտնում ռուսական կեանքի մէջ, իսկ գերմանացիք պաշտում են Վագներին. բայց չէ՞ որ երաժշտական ձայները, դօ, րէ, մին միջազգային են, բոլորի ականջների համար ընդունելի. ապա ինչո՞ւ ենք ասում իտալական, ֆրանսական, գերմանական երաժշտութիւն։ Ինչո՞ւ Կարմէնը ստեղծագոր-

Արդահանցիներ, յանուն նոր սերնդի ապագայ բարօրութեան, յանուն բոլորիս սիրելի հայրենիքի վերաշինութեան ու մեր ժողովրդի յառաջադիմութեան, կոչ ենք անում ձեզ, ձեռք ձեռքի տանք և այս երկունքի օրերում միահամուռ ջանքերով առաջ տանենք վերաշինութեան նուիրական գործը։

Լիայոյս ենք, որ մեր այս կոչը արձագանգ կը գտնէ ձեր սրտերում։

Օ՜ն ուրեմն, դէպի աշխատանք և զոհաբերութիւն։

Հրանտ Մինասեան

---

# ԳԱՒԱՌ

ՍՈՒԼՏԱ (Ախալք. գաւ.), 18 ապրիլի.—«Համբաւաբերի» № 15-ում պ. Վան-ինի Սուլտա գիւղից գրած թղթակցութիւնը մեր գիւղացիների արդար զայրոյթն է առաջ բերել իր սխալ տեղեկութիւններով։ Սուլտան գաւառիս ամենամեծ գիւղը չէ, ինչպէս գրում է պ. Վան-ինը. գաւառիս մեծ գիւղերն են Կարզախ, Հեշտիա 500-ական տուն, Սաթխա 350 տուն, Գանձա 308, Տիլխկա, Վաչիան, Գիւմբուրդա, Արակովա, Ազաւրուէտ, Խանդո... 300-ական տուն։ Իսկ Սուլտան ունի ընդամենը 200 տուն։ Գիւղումս ոչ «մի գծուծ թայֆայական հաշիւներ» գոյութիւն չունին, գիւղացիք ապրում են անչափ սիրով. մէկը միւսին օգնում են կարիք եղած դէպքում։ Իւղի փ. ոչ թէ 1ր.-30 կ. է, այլ 80 կոպէկով է ծախւում։ Տաքարի փ. ոչ թէ 50 կ., այլ 28-30 կ։ Համբարեանների տունը կրակ ձգելը, ինչպէս յետոյ ստուգուեց, երեխաների անզգուշութիւնից է պատահել։ Դպրոցական նոր շէնքի կառուցման գործին գիւղացիները ոչ մի ջանք իրանց կողմից չեն խնայել, աշխատել են ձրի. դպրոցի անագին քանակութեամբ քարը իրանց սեպհական սայլերով, մշակներով բերել են գիւղից շատ հեռու գտնուած Մամզարա գիւղի քարահանքից ձրի, որմնադիր վարպետներին կերակրել են ձրի։ Ծախսուել է նոր դպրոցի վրայ գիւղիս Ս. Խաչ եկեղեցու փողերը, 3-4 տարի հասարակութեան «Պօզալի-Ձոր» կոչուած մարգագետնի խոտը, 3-400 ռ. արժողութեամբ, սիրայօժար կերպով սուլտացին նուիրել է նոյն դպրոցի կառուցման և մի քանի անգամ դրամական նուէներ է արել։ Դպրոցի կիսատ մնալու պատճառը եղել է մ ի մ ի ա յ ն ներկայ համաշխարհային պատերազմը։ Իսկ ինչ վերաբերում է պ. Յով. Մալասեանի ջանքերին—այդ ճիշտ է, որ նա նուիրուած է դպրոցի կառուցման գործին։

Ա. ք. Բ.

***

ԱԽԱԼՔԱԼԱՔ, 20 ապրիլի.—Այս գաւառի գիւղացութիւնը գտնւում է վերին աստիճանի անմխիթար վիճակում։ Մի կողմ թողնելով պատերազմի պատճառով առաջ եկած չարիքները, հարկաւոր է կանգ առնել այս տեղի դպրոցական վիճակի վրայ։ Ախալքալաքը,—որ հայաշատ գաւառներից մէկն է և որի բնակչութիւնը 100 հազարի է հասնում, կրթական-դպրոցական տեսակէտից գտնւում է շատ աննախանձելի պայմանների մէջ։ Միանգամայն անհասկանալի է մնում թէ՝ ինչու այս աստիճան անփոյթ վերաբերմունք է ցոյց տալիս հայոց հոգևոր իշխանութիւնը, ինչու է դատապարտելի անուշադրութեան մատնել մեր ապագայ յոյսերի պատուանդան—գաւառը։

«Հորիզոն»-ի № 81-ում կարդում ենք պ. Գիսակի ուշագրաւ յօդուածը և ցաւում, որ այդ աստիճան տխուր փաստերով է նկարագրում վիրախօս հայերի կացութիւնը։

Ախալքալաքի գիւղերից 6-7 հազիւ թէ ունենան ծխական դպրոցներ։ Այս դրութեամբ գիւղը չի կարող յառաջադիմել, հարկաւոր է աչալուրջ հսկողութիւն և ջերմ աջակցութիւն։ Կ. Հ. Բ. Ընկ.-թիւնը ծախք չը խնայելով դպրոցների քանակը շատացնում է և նպաստում է առհասարակ գաւառի կրթական գործին, բայց հոգևոր իշխանութիւնը ևս պէտք է վերահասու լինի և արձագանգ տայ գաւառացու հոգսերին և կարիքներին և ոչ թէ վիրախօս հայերի գիմումի նման անպատասխան թողնի...

*

— Բաղաքիս ծխական երկսեռ դպրոցների տեսուչ պ. Ի. Տէր-Ղազարեանի բացակայութեան պատճառով Զատկական տօներին նշանակուած ուսուցչական համագումարը չկայացաւ։

— Կ. Հ. Բ. Ընկ.-թեան տեղիս ճիւղը արդէն բացել է ձեռագործի արհեստանոց գաղթական չափահաս աղջիկների համար։ Հրաւիրուած են երկու վարժուհի. պարապմունքները լինում են ծխական դպրոցում ճաշից յետոյ ժամի 3—5։

— Գաղթականներին շատ է մտատանջում ներգաղթի խնդիրը. հարկաւոր է շուտափոյթ օգնութիւն, որպէս զի շուտ վերադառնան և սկսեն դաշտային աշխատանքները։ Այդ մասին յայտնուած է իշխանութեանց։

Ն. Մենակեան

***

ԴԻԼԻՋԱՆ.—Ամսիս 12-ին տեղի ունեցաւ որբ աշակերտուհիների երկրորդ հանդէսը, որը կրկնուեց 13-ին։

Ուսուցչական խմբի կողմից հրաւիրատոմսերով կանչուած էին, ինչպէս առաջին հանդէսին, տեղիս համարեա ամբողջ գործիչներն ու բանիմաց դասը, նաև ծխականի բարձրագոյն երկու կարգերի երկսեռ աշակերտները։

Ներկայ էր և պ. Ս. Յարութիւնեանը։

Հանդէսը ծրագրուած էր բաւական յաջող. գողտրիկ և մանկական ծիծաղաշարժ ոտանաւորները ընդմիջումներով խմբական երգերի կամ պարերգների, դրամախօսութիւններ (դիալոգներ), վոդևիլ և հայկական պարեր։

Տպաւորութիւնը հիանալի էր. յաջող էին մանաւանդ տաճկահայկական կեանքից դրամախօսութիւններ, ժողովրդական եղանակով խմբական երգեր, տաճկահայ գրողների մանկական պարերգները և տիպիկ հայկական, դարաւոր թախծանքի նշողներ արտացոլող հեշտօրօր-պարերգները։

Դերակատարների համարձակութիւնը, դերերի չարաճճի ըմբռնումը գոհացուցիչ էր միանգամայն։ Մի պահ տատամսելի էր հաւատալ, թէ դրանք անօգոր ճանապարհի կմախքացած թափթփուկների հաւաքածուներ են։ Հանդէսը տեւեց $2^1/_2$ ժամ և վերջացաւ 6-ին։

Ուսուցչութեան խմբի կողմից աւագ ուսուցիչ Տ. Շահբազը յայտնեց իւր խորին շնորհակալիքը հրաւիրեալներին, որ բարեհաճել էին իրենց ներկայութեամբ յարգել որբերի հանդէսը։ Ժողովուրդը խնդրեց, որ պարբերական դառնան նման հանդէսները, որոնք իրենց չափով, բայց անխարդախ կերպով կամաց կամաց կը ծանօթացնեն քաղաքականօրէն անջատուած եղբայրակիցներին ազգի օրրանի անաղճատ ինքնուրոյնութիւնները, քաղաքակրթութիւնն ու վարք ու բարքը։

Գովելի է ուսուցչական խմբի անխնայ աշխատութիւնը։ Մի տարուայ մէջ, այլ և այլ նահանգների զանազան գիւղերի այլազան բարբառներ ունեցող անուս երեխաներից կազմակերպել այս տեսակ հանդէս—բացատրւում է միմիայն ուսուցիչների և աշակերտների էութեանց, հոգիների ներդաշնակ բաղակցութեամբ։

* * *

---

## ՏԱՐԵԳԻՐ ԲԱՐԵԳՈՐԾՈՒԹԵԱՆ

### ՆՈՒԷՐՆԵՐ

Կ. Հ. Բ. Ընկ. շնորհակալութեամբ ստացել է յօգուտ հիւանդանոցի պ. Ատովմեանից երկու հատ զատկահաց (куличи) և 100 ձու։

— Յովսէփ Մնացականեանից յօգուտ փախստականների 5 ռ.

***

*Կ. Հ. Բ. Ընկերութեան Խորհուրդը տուել է հետեւեալ գումարները.*

*1) Փոխարքայի դիւանատնից՝ սերմացու, գիւղատնտեսական գործիքներ և լծկաններ գնելու Վանի շրջանի հայերի համար —120,000 ռ.։*

*2) Նոյն դիւանատնից տրանսպորտ կազմելու Իգդիրից մինչեւ Վան 43.000 ռ.։*

*3) Կրկին Փոխարքայի դիւանատնից փախստականների համար մթերքների պահեստներ հիմնելու համար 400.000 ռ. (այս նպատակի համար տրւելու է եւս 500.000 ռ.)։*

*4) Կարմիր Խաչի ընկերութիւնը ապրիլ ամսից սկսած տալու է ընկերութեան լազարէթի համար ամսական 3000 ռ.։*

* * *

*Աշանի ծխ. դպրոցի հոգաբարձութիւնը շնորհակալութիւն է յայտնում պ. Հ. Սարումեանին՝ նուիրած 1916 թ. մի օրինակ «Համբաւաբեր»-ի։*

* * *

*Հայ Կենտր. Կոմ. շնորհակալութեամբ ստացաւ Տոմսկի հայ ուսանողութեան շրջանի նախաձեռնութեամբ հաւաքած և ուղարկած 1423 ռ. 85 կ. յօգուտ պատերազմից վնասուած հայ գաղթականների։*

* * *

*Հայ Կենտր. Կոմ. շնորհակալութեամբ ստացել է Վլադիկաւկազմի հայ կոմ. կողմից ուղարկուած 2 արկղ շորեր և 3 արկղ օճառ (սապոն) հայ գաղթականների համար։*

* * *

## *ՃԻՒՂԵՐ*

*Թելաւ.—Կ. Հ. Բ. Ը-թեան տեղիս ճիւղի տարեկան ընդհանուր ժողովում քննուեց 1915 թ. մտից և ելից հաշիւները։ Այդ տարեթւում մուտք եղել է 3799 ռ. 16 կ. և ծախք 3698 ռ. 66 կ. Առ 1-ն յունուարի 1916 թ. մնում էր 100 ռ. 50 կ.*

*Ժողովը հաստատելով հաշիւը շնորհակալութիւն յայտնեց վարչութեան նախագահին՝ տ. Օլգա Փօղոյեանին և կազմին։ Այնուհետեւ ժողովը անցաւ ընթացիկ խնդիրներին։ Որոշուեց աշխատել բանալ Մատան գիւղում ծխական դպրոց, ուր 278 ծուխ հայ կայ, ձեռնարկել Ուրխաթուբանի դպրոցի շինութեան գործը, ծախսելով այդ նպատակի համար ժողոված 600 ռուբլին. Թելաւում բաց անել արհեստաւորաց դպրոց, յանձնարարելով այդ գործի իրագործումը վարչութեանը։*

*Վարչութեան կազմն է. նախագահ՝ տ. Օ. Փօղոյեան, անդամներ՝ տիկ. Ա. Թամազանեան, օր. Ս. Ալխազեան, օր. Շ. Եաբալեան, պ. Գ. Տէր-Յարութիւնեան, քարտուղար՝ պ. Ա. Տէր-Աւագեան և գանձապահ՝ Գ. Թումանեան։*

* * *

*Ղազախ.—Կ. Հ. Բ. Ը-թեան ճիւղը 1915 թուականին ունեցել է մուտք 590 ռ. 64 կ. և ելք 290 ռ. 64 կ.։ Առ 1-ն յունուարի 1916 թ. մնացորդ գումար 300 ռ., վարչութեան կազմը եղել է նախագահ՝ Գէորգ Տէր-Իսրայէլեան, գանձապահ՝ Յովսէփ Բէգնազարեան, քարտուղար՝ Զաք. քահ. Սարգսեան և անդամներ՝ պ.պ. Ա. Տէր-Յակոբեան և Ա. Խաչատրեան։*

* * *

*Ցխինվալ.—Տեղիս Կ. Հ. Բ. Ը-թեան ճիւղը 1915 թ. ընթացքում ունեցել է մուտք 423 ռ. 47 կ., ելք 390 ռ. 20 կ.։ Վարչութեան կազմը՝ նախագահ՝ Միքայէլ Միրուրեանց, փոխ-նախագահ՝ Արզար Տէր-Ստեփանեան, գանձապահ՝ Սարգիս Սոմխեան, քարտուղար՝ Արփենիկ Ասլանեան և անդամ՝ Յովհաննէս Ծահպարոնեան։*

* * *

*Ղափան.—Ընդհանուր ժողովում տեղի ունեցաւ նոր անդամների և փոխ-անդամների ընտրութիւնը։ Գաղտնի քուէարկութեամբ վարչութեան անդամներ վերընտրուեցան Ս. Մելիք-Ստեփանեան, Կ. Խոջամիրեան, բժ. Է. Անտօնեան, Աղայեան և Մալինցեան, իսկ փոխ-անդամներ՝ Յ. Դանիէլեան և Մխ. Բաբայեան։*

*Տեղական ճիւղի վարչութիւնը Ղաթարի հանքերում պահում է դրադարան-ընթերցարան, որ ունի մօտ 2000 հատոր գիրք։ Անցեալ 1915 թւին ունեցել է 1340 յաճախորդ։ Ստացուել է 16 պարբերական հայերէն և ռուսերէն թերթեր։ Ճիւղը նոյն թւին ունեցել է մուտք 855 ռ. 10 կ. և ելք 706 ռ. 09 կ., մնացորդ առ 1-ն յունուարի 1916 թուականի 149 ռ. 01 կ.։ Վարչութեան կազմը նոյն թւին եղել է—նախագահ՝ Ս. Մելիք-Ստեփանեան, քարտուղար՝ Ի. Մելիք-Բարամեան, գանձապահ՝ Յ. Դանիէլեան, անդամներ՝ Խ. Մելքումեան և Մ. Էլչիբէգեան։*

* * *

## *ՄԱՍՆԱԿԻ ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆՆԵՐ*

*Կարապետ եպիսկոպոսի յիշատակը յաւերժացնող նուիրատուներին։*

*Յայտնում եմ ի գիտութիւն Կարապետ եպիսկոպոսի յիշատակը յաւերժացնելուն նպաստող յարգելի նուիրատուներին, որ ես շնորհակալութեամբ ստացել եմ մինչեւ 1 մայիսի Վերին-Ագուլիսից պ. Ղազարեանի միջոցով հանգանակուած . 75 ռ. — կ.*

| | |
|---|---|
| *Ճուղուրեան քահանայից, Ս. Խաչ-քաղաքից . .* | *5 ռ. — կ.* |
| *Մեսրովբ Արովեանից, Ղարաղաղից . . .* | *50 ռ. — կ.* |
| *Սիօն վարդ. Հ.-Նախիջեւանում հանգանակուած .* | *41 ռ. 75 կ.* |
| *Մինաս Բերբերեանից Թիֆլիսում հանգանակուած.* | *105 ռ. — կ.* |
| *Մ. Խասաբիկեանից » » .* | *57 ռ. 50 կ.* |
| *Մ. Արեղեանից » » .* | *19 ռ. — կ.* |
| *Ս. Կանայեանից » » .* | *25 ռ. — կ.* |
| | *Ընդամենը 378 ռ. 25 կ.* |

*Անդամ գանձապահ Թիֆլ. Յանձնաժողովի*

*Մ. Բալանթարեան*

* * *

*Կարապետ եպիսկոպոսի յիշատակը յաւերժացնելու համար խմբագրութիւնս շնորհակալութեամբ ստացել է հետեւեալ նուէրները՝ պ. Հմայեակ Վահանեանից (Խնձենք) 15 ռ., Ղուկաս Դորենիկեանից 5 ռ. և Ստ. Կանայեանից 5 ռ. ընդամենը 25 ռ., որ յանձնեց նոյն նպատակով կազմուած Թիֆլիսի յանձնաժողովի անդամ-քարտուղար պ. Մ. Բալանթարեանին։*

# Քրոնիկոն

*Գէորգեան հայկական համալսարան.—Թիֆլիսի հայկական հաստատութիւնների կողմից երրորդ անգամ ի պատասխան Գէորգեան Հայկական Համալսարան հրաւիրող Կարգադրիչ Յանձնաժողովին հեռագրուեց, որ Համալսարանը յետաձգուի և նշանակուի ոչ շուտ յունիսի սկզբից։ Այդ տեսակ հեռագրեր ուղարկուել են և ուրիշ կենտրոնական տեղերից։ Եթէ կրկին Կազմակերպիչ Յանձնաժողովը անտես կանի այս արդարացի պահանջը, Համալսարանը կը կորցնի իր արժէքը և դրական հետեւանք չի ունենայ։*

* * *

*Թիֆլիսում բացւում են երկու նոր որբանոցներ հայ փախստական երեխաների համար։*

* * *

*Կարմիր Խաչը նշանակել է Կ. Հ. Բ. Ը-թեան Թիֆլիսի լազարէթին նպաստ ամսական 3000 ռ.։*

* * *

*Պետական Դումայի անդամ պ. Մ. Պապաջանեանցը անցեալ չորեքշաբթի Պետրոգրադից ժամանեց Թիֆլիս։*

* * *

*Հինգշաբթի օրը, երեկոյեան, Հայ Գրողների Ընկերութեան նախաձեռնութեամբ Թիֆլիսի ժողովարանում կայացաւ գրական*

երեկոյթ՝ նուիրուած Շեքսպիրին և Սէրվանտէսին։ Խօսեցին պ.պ. Յ. Թումանեանց, Շիրվանզադէ, Գ. Իփեկեան, Ա. Ջամալեանց և ուրիշները։

***

Կարմիր Խաչի Ընկերութիւնը Թիֆլիսում հիմնում է նոր հիւանդանոց ջղային և հոգեկան հիւանդների համար։ Պատերազմից յետոյ հիւանդանոցը յանձնուելու է քաղաքին։

***

Նորերս Թիֆլիսում վախճանուեց հին վաճառական Գ. Կուզանեանը, որը թողել է մեծ կարողութիւն։ Հանգուցեալը, ինչպէս հաստատում են նրան մօտ ճանաչող վստահելի անձինք, ունեցել է կտակ և խոշոր գումարներ է նշանակած ունեցել հայկական հաստատութիւնների օգտին։ Իսկ այժմ այդ կտակը չքացել է։

***

Վաղը Թիֆլիսի քաղաքային դումայում նշանակուած է քաղաքագլխի և դումայի քարտուղարի ընտրութիւն։ Քաղաքագլխի պաշտօնի համար միակ թեկնածուն պ. Ա. Խատիսեանն է համարւում։

***

Փոխարքայի Պալատում առանձին խորհրդակցութեան նիստերը՝ Կովկասում գնատոմս մտցնելու մասին՝ տեղի են ունենում անընդհատ ցերեկ և գիշեր. կը շարունակուեն մինչև մայիսի 12-ը։

***

Համառուսական քաղաքների կովկասեան բաժանմունքի կոմիտէն Մոսկուայից՝ Միութեան գլխաւոր լիազօրից ստացել է մի հեռագիր, որով վերջինս փոխադրում է 1,700,000 ռուբլի որպէս լրացուցիչ մաս արդէն փոխադրուած 4 միլիոն ռ.։

***

«Սպիտակ ծաղկի» օրը տուել է 5,201 ռ. 99 կ., բացի այդ եղան և հետեւեալ խոշոր նուիրատուութիւնները. ա) իշխ. Մ. Ա. Թումանեանից մէկ մահճակալի ծախս բացուելիք սանատորիայում—1500 ռ., բ) տիկ. Ա. Մ. Օզանէզեանից նոյն նպատակի համար—1500 ռ.։

***

Այսօր, կիրակի մայիսի 1-ին, Արտիստիկ Ընկերութեան դահլիճում առաւօտեան ժամի 11-ին տեղի է ունենալու նորակազմ «Արուեստագէտների Միութիւն» ընկերութեան առաջին ընդհանուր ժողովը։

***

Գ. Հ. Սարումեանի նուէրների հաշուին ուղարկւում է «Համբաւաբեր» նաև Շուշու Մարիամեան, Ղարաբաղի Ֆիրջամալ, Գեշան, Խնուշինակ, Թաղ և Հադրութ գիւղերի հայ դպրոցներին մի-մի օրինակ։

# Արտաքին տեսութիւն

## ԳԵՐՄԱՆ-ԱՄԵՐԻԿԱԿԱՆ ՎԷՃԸ

Համաշխարհային պատերազմի շնորհիւ Հիւսիսային Ամերիկայի Միացեալ-Նահանգներն այնպիսի կշիռ են ձեռք բերել Եւրոպայի քաղաքական կեանքում, որպիսին այս անդրատլանտեան պետութիւնը երբեք չէ ունեցել։ Այդ հասկանալի է ի հարկէ. եւրոպական արէոպագում ներհակ պետութեանց ուժերն այնքան են հաւասարակշռուած, որ Միացեալ Նահանգների այս կամ այն կողմն անցնելը չի կարող ծանր միահողութիւն չպատճառել նրանց։ Սակայն արդար լինելու համար պէտք է ասել, որ Միացեալ Նահանգները Եւրոպայի խառնակ վիճակն օգտագործելու համար չէ, որ միջամտում են եւրոպական գործերին, այլ նրան ստիպում են այդ բանին հենց իրենք, կռուող պետութիւնները և յատկապէս Անգլիան ու Գերմանիան։

Պատերազմի սկզբից այս երկու պետութիւններն այնպիսի դիրք բռնեցին ծովերի վրայ, որ կարծէք աշխարհիս ջրերն իրենց սեփականութիւնը լինէին, և որ և է այլ պետութիւն նրանց վրայ շահեր չունենար։ Անգլիան հենց այն գլխից համոզուած, որ Գերմանիային յաղթելու համար անհրաժեշտ է նրան տնտեսապէս խեղդել կամ սովամահ անել՝ ծովապաշարման (բլոկադի) դրութիւն յայտարարեց գերմանական բոլոր ջրերում և համաձայն այդ դրութիւնից բղխող օրէնքների՝ սկսեց գրաւել կամ խորտակել այն նաւերը, որոնք ապրանքներով բարձուած դիմում էին դէպի գերմանական նաւահանգիստները։ Այս քայլն անկասկած հակառակ է Հաագայի համագումարում (կոնֆերէնսում) ընդունուած միջազգային օրէնքներին, որովհետև ըստ այդ օրէնքների՝ նա իրաւունք ունի միջոցներ ձեռք առնել իր հակառակորդի զինուած ուժերի դէմ, բայց երբէք անզէն ժողովրդի դէմ։ Բացի այդ՝ Անգլիան իրաւունք ունի ծովապաշարում յայտարարել գերմանական ջրերում միայն այն չափով, ինչ չափով նա ի վիճակի է իր ծովային ուժերով իրականացնել այդ պաշարումը, մինչդեռ նա այնքան ծովային ուժեր չունի, որ փաստօրէն պաշարել կարողանայ գերմանական ծովափը։

Այս ակներև ապօրինութիւններին ի պատասխան՝ Գերմանիան 1914 թ. աշնանը պատերազմական դրութիւն յայտարարեց անգլիական բոլոր ջրերում և սկսեց սուզանաւերով խորտակել թշնամու նաւահանգիստները մտնող և այնտեղից ելնող բոլոր նաւերը, ում էլ նրանք պատկանելիս լինէին, առանց նոյն իսկ այդ նաւերի վրայ գտնուած մարդկանց կեանքերը խնայելու։

Ինչպէս տեսնում ենք, երկու կողմն էլ ոտնատակ են տալիս միջազգային օրէնքները և դրա հետ միասին չէզոք պետութեանց շահերը։ Սակայն այստեղ մի էական տարբերութիւն կայ. Անգլիան գրաւելով կամ խորտակելով որ և է չէզոք նաւ՝ ոչ մի վնաս չի հասցնում այդ նաւերի վրայ գտնուած մարդկանց կեանքերին և ի պահանջել հարկին դրամական հատուցումով գոհացնում է նաւատիրոջը. իսկ Գերմանիան, որ վայրագօրէն ջրասոյզ է անում անմեղ մարդկանց, ինչո՞վ կարող է վճարել նրանց արեան գինը... Այստեղից հասկանալի է, թէ ինչու չէզոք պետութիւնները աւելի հանդուրժող վերաբերմունք են ցոյց տալիս դէպի անգլիական ապօրինութիւնը քան թէ դէպի գերմանականը։

Վերջիններիս մէջ առաջին տեղը բռնում է Հիւս. Ամերիկայի մեծ հասարակապետութիւնը։ 1914 թ. դեկտեմբերին և 1915 թ. հոկտեմբերին Միացեալ Նահանգները լուրջ առաջարկութիւններով պահանջեցին Անգլիայից՝ յարգել չէզոք պետութեանց իրաւունքները։ Անգլիան տուաւ իր բացատրութիւններ և Միացեալ Նահանգները գոհացան կամ ձեւացրին թէ գոհացան։ Սակայն Գերմանիայի հանդէպ Միացեալ Նահանգներն ուրիշ լեզու են բանեցրել սկզբից։ Ամեն մի նաւ խորտակելուց յետոյ, եթէ նրա վրայ Միացեալ Նահանգների քաղաքացիներ են եղել, Գերմանիան ստիպուած է եղել երկարատև բանակցութիւններ վարել Միացեալ-Նահանգների հետ և միշտ ապագայի համար որոշ խոստումներ տալ նրանց գոհացնելու համար։ Սակայն ոչ Գերմանիան է կարողացել պահել իր խոստումները և ոչ էլ Միացեալ-Նահանգներն են ձեռք վերցրել իրենց պահանջից։ Յարաբերութիւններն այս երկու պետութեանց բաւական սրուեցին «Լուզիտանիայի» խորտակումից յետոյ, որի ժամանակ Միացեալ Նահանգների քաղաքացիներից մօտ 100 հոգի զոհ գնացին։ Այս առթիւ առաջացած վէճը նոր էր կարգաւորուել, երբ, անցեալ մարտին, գերմանացիք խորտակեցին «Էսսէկ» շոգենաւը, որի վրայ գտնւում էին մի քանի ամերիկացիք։ Այս վայրագութիւնը կարծէք Միացեալ Նահանգների համբերութեան բաժակը լցրեց։ Ամսիս 6-ին նախագահ Վիլսոնը Կոնգրէսի համաձայնութեամբ մի վերջնագիր տուեց Գերմանիային, յայտարարելով, որ եթէ Գերմանիան վերջ չը տայ սուզանաւերի հակամարդկային և հակօրինական գործադրու-

թիւններին՝ Միացեալ Նահանգները կը կորեն իրենց դիւանագիտական յարաբերութիւնները։

Այս վերջնագիրն անգամ իրարանցում առաջ բերեց Գերմանիայում։ Պանգերմանիստները պնդում էին, որ կառավարութիւնը պէտք է գրականապէս մերժի Միացեալ Նահանգների պահանջը։ Մէկ թշնամի աւել մէկը պակաս—դրանով Գերմանիայի դրութիւնը շատ չի փոխուի։ Սուզանաւերի ազատ գործունէութիւնից հրաժարուելով մենք աւելի կը տուժենք քան թէ Ամերիկայի հետ ունենալիք պատերազմից։ Այսպէս էին խօսում «Lokal Anzeiger»-ի և «Deutsde Rundschau»-ի «ուռռա հայրենասէրները»։ Սակայն, ինչպէս երևում է, գերմանական կառավարութիւնը երկրի դրութիւնն այլ կերպ է հասկանում և Ամերիկայի հետ լինելիք պատերազմին այլ նշանակութիւն տալիս։ Այդ պատճառով նա այս անգամ էլ գիջման ուղին բռնեց։ Երկու օր առաջ Միացեալ Նահանգներին յանձնած յայտագրի մէջ գերմանական կառավարութիւնն ասում է, որ ինքը հրահանգել է սուզանաւերի հրամանատարներին, այսուհետև առանց նախազգուշացնելու և նաւորդների կեանքի ազատութեան համար միջոցներ ձեռք առնելու նրանք ոչ մի նաւ չը խորտակեն ոչ ազատ և ոչ իսկ պատերազմական դրութեան տակ գտնուող ջրերում։ Սակայն սրա հետ միամին գերմանական կառավարութիւնը պահանջում է, որ Միացեալ Նահանգները ճնշում գործ դնեն Անգլիայի վրայ՝ որպէսզի նա էլ ղեկավարուի ծովային պատերազմի վերաբերեալ միջազգային օրէնքներով, հակառակ դէպքում սպառնալով վերսկսել նախկին սուզանաւային գործունէութիւնը։

Միացեալ Նահանգները միանգամայն մերժում են գերմանական պատասխանի այս պայմանը, պնդելով, որ սուզանաւերը պէտք է դադարեցնեն իրենց նախկին գործունէութիւնը՝ անկախ Անգլիայի գործած և գործելիք ուրիշ խօսքով, նրանք ասում են, որ Գերմանիայի հանդէպ Անգլիայի գործած պատճառով իրենք չեն կարող թոյլ տալ, որ Գերմանիան ծովի յատակն ուղարկի չէզոք պետութեանց քաղաքացիներին։ Բայց և այնպէս նրանք որոշել են գոհանալ Գերմանիայի պատասխանով, մինչև որ վերջինս կը վերսկսէ իր նորատեսակ ծովահէնութիւնը։

Այսպիսով մօտ մի ամսուայ բանակցութիւններից յետոյ գերմանական դիւանագիտութիւնը կապիտուլացիա արեց Միացեալ Նահանգների առաջ և այդ գնով այս երկու պետութեանց մէջ, հակառակ շատ երկիւղների և սպասումների, մի որոշ համաձայնութիւն կայացաւ։ Սակայն երկա՞ր կը տևի այս համաձայնութիւնը—մենք այդ մասին կասկածում ենք։

Ս. Զաւարեան

# Գեղարուեստ

## ԱՐԵԳԱԿ *)

Ի՞նչ եղար, մէկ դուրս արի, հայոց արեգակ, ինչ եղար,
Թողնելով որդիկներդ խաւար, մութի տակ, ինչ եղար.
Բաւականին ժամանակ է հեռանալդ մեզանից,
Ապրում ենք առանց լուսոյ այսքան ժամանակ, ինչ եղար։

Մանաւոր շառաւիղդ մօտ տարիներս ցոյց տուիր,
Ազգի մէջ բարձրացուցեր աղմուկ, աղաղակ, ինչ եղար.
Քո դիւցազուն, անարատ մանուկներդ այսքան տարի,
Խաւարի որդիքներուն թողիր հպատակ, ինչ եղար։

Սառեցաւ մեր արիւնը ցուրտ հողմային պաղութիւնից,
Ե՛կ հասիր, լոյս ջերմարար, կենդանի կրակ, ինչ եղար.
Բալկանեան լեռներուց նոր դուրս գալող արևի պէս,
Մէկ դուն էլ խղճի արի, ցոյց տուր նշանակ, ինչ եղար։

Ափսոս ենք մենք, խղճա մեզ, ազնիւ լուսարար թագուհի.
Ընծայէ խեղճ հայերուն արժանի պսակ, ինչ եղար.
Կեանք կուտան ողջ մարդիկը, Ջ ի ւ ա ն ի ն էլ քեզի համար,
Դուրս արի պայծառ լուսով ազատ համարձակ, ինչ եղար։

*) Խմբագրութիւնս շնորհակալութեամբ ստացել է պ. Գարեգին Լևոնեան-Ջիւանուց իր հօր՝ մեր ականաւոր ազգային աշուղ Ջիւանու ոտանաւորներից, որոնցից մէկ-երկուսը ցարդ տպագրուած չեն, իսկ միւսները նայելով արդէն հրատարակուած են, բայց նոյն որ այժմ շատ հազուագիւտ են և որ գլխաւորն է՝ այժմէութիւն ունեն։ Ուստի և հետզհետէ կը տանք մեր ընթերցողներին։

# Գրականութիւն

## ԴՈՒՈՐՆԻԿԸ*)

### Բ

Զատկի երկրորդ օրը դարբինների տէրտէրը Մ. փողոցում տիրացուի հետ տնօրհնէք շրջելիս մտաւ մի երկար բակ։ Առաջին սանդուխի ներքև հանդիպեց նրան մի հաստ ու կոշտ գերմանացի. առանց ձեռները գրպանից հանելու հարցրեց.

— Ո՞ւմ էք կամենում, տէր հայր, նկատելով որ քահանան գլուխը բարձրացրած դէս դէն է նայում։

— Այստեղ մի ծուխ ունիմ, պարոն տանտէր, պատասխանեց քահանան, նրան եմ աչք ածում, որ բնակարանը գտնեմ։

— Իմ տանը բնակուող հայեր չըկան, տէր հայր, ասեց գերմանացին, աջ պողոտնցով կզակի մազափունջը տրորելով։ Այստեղ կար մի հայ ուսուցիչ, անցեալ տարի հեռացաւ, ուրիշ էլ հայ չը կայ։

— Ի՞նչպէս չէ, եռանդով շեշտեց քահանան, ես գիտեմ, որ այստեղ Վարդան անունով մի հայ կայ։

Տանտէրը դուորնիկի անունը լսելիս սկսեց արգահատանքով նայել քահանային, կարծես մտքումն ասելիս՝ եթէ քո ծխերը դուորնիկներ են, վա՜յ տամ քո ապրուստին։ Դէմքը խոժոռելով ասեց քահանային.

— Տէր հայր, տնկիցների ցուցակը ահա պատին կախած է, բոլորին անձամբ ճանաչում եմ. իմ բակում բացի դուորնիկից ուրիշ հայ չը կայ։

Դեմոկրատ հովուին խիստ վիրաւորական թուաց գերմանացի տան տիրոջ արհամարհոտ վերաբերմունքը դէպի դուորնիկըսրափ ցաւից գլուխը թափ տուեց ու վրդովուած ասեց.

— Պարոն տանտէր, այստեղ 21 նումերում բնակւում է Վարդան անունով հայը, խնդրեմ նրա բնակարանը ցոյց տուէք ինձ։

— Ի՞նչպէս, չսեց գերմանացին աչքերը հայ քահանայի վրայ, ինձ տանտիրոջս խօսքին չէ՞ք հաւատում, այժմ կամենում էք դուորնիկին հարցնել։ Տէր հայր, իմացած եղէք, որ այդ շատ վիրաւորական է ինձ համար...

— Պարոն տանտէր, ձայնը բարձրացրեց դարբինների տէրտէրը, ոչ զարմացէք և ոչ վիրաւորուեցէք, ես իրան դուորնիկին եմ փնտրում, որովհետև եկել եմ նրա բնակարանն օրհնելու։

— Ա՜ա՜ա՜, կարիճից խայթուածի պէս գոչեց հաստ գերմանացին, հերսից ամբողջ մարմնով ցնցուելով. դուորնիկի բնակարա՞նն էք կամենում օրհնել... Անպիտան գարշելին դրա համար է շարունակ տրտնջում, որ ռոճիկը քիչ է, աւելացնեմ։ Ո՛չ, երբ հանդգնում է այսպիսի անտեղի ծախսեր անել, էլ հարկաւոր չէ նրան պահել—նրա տեղի համար անթիւ խնդրողներ կան...

*) Տես «Համբաւաբեր» № 17։

Մրթմրթալով զայրացաւ, կարմրեց, սփարթնեց ինքն իրան ու վերջը դարձաւ բակում կանգնած քահանային ասեց.

— Տէր հայր, ներողութիւն արէք, դուրնիկ Վարդանը ազատ ժամանակ չունի այսօր, նա պարտէզում աշխատում է կնոջս պատուէրները կատարելով։

Նրա դուրս տրաքած աչքերը դէմքին այնպիսի սարսափելի տեսք էին տուել, որ նայողը սրտապատառ կըլինէր, բայց զարիբների տէրտէրը վախեցողներից չէր. ահա գրողամաղը յոնքամէջում ցից կանգնեց, ձեռի հաստ գաւազանը գետնին զարկելով դէպի նա խրոխտաց.

—Պարոն տանտէր, ինչպէս թէ Վարդանը ազատ ժամանակ չունի. ստրկութիւնը աշխարհից վաղուց է վերացել, ես պահանջում եմ, որ Վարդանը կէս ժամով ձեռի գործը թողնի, գայ ինձ մօտ։ Դուք նրան ամսական վճարում էք 13 ռուբլի, ահա ստացէք ինձնից նրա մի ամբողջ օրուայ վարձը, ձեր շատ խօսելն ինչ է...

Բնակալ գերմանացին տէր հօր վերջին խօսքերից այնպէս ամօթահար եղաւ, որ սափրած դէմքը ճակնդեղի գոյն ստացաւ, աչքերը գետնին գցելով պապանձուեց։ Ոչ թէ քաջութիւն չունեցաւ ստրկութիւնը շարունակել, այլ վախում էր նայել համարձակ քահանայի երեսից, որ բակի մանուկների ուղեկցութեամբ գնում էր բակի ներքև դէպի № 21-դ բնակարանը։ Հասնելով դռանը կռճակն արձակեց ու տիրացուի հետ մտաւ ներս։ Սենեակի տարածութեան մեծ մասը բռնած ունէր տանտիրոջ փուռը, որի ծխից բոլորովին մխոտուած էին պատերն ու առաստաղը, աղիւսէ յատակը փոսեր ընկած, ոտնամանների ցեխերից տարիների ընթացքում թումբեր կազմած, որոնք անզգոյշ մտնողին կարող էին գլխի վրայ ցցանակ բերել։ Դիմաց պատի լուսամուտի աչքերը ապակու տեղ լրագրի թղթերով զարդարած. նրա առաջ փայտէ, կեղտից սեւացած երկար սեղան. մի ոտը կոտրուած լինելու պատճառով պատին դէմ ընկած. երկու ցածր տախտ, մէկի վրայ զինուորի շինէլ ու հին լանթեր թափթփած, միւսի վրայ գունաւոր չթէ երեսով վերմակ խնամքով փռած. այդ դուրնիկինն էր. կողքի պատին փոքր հայելի կախած, նրա մօտ էլ թղթէ շրջանակի մէջ Վ ա ր դ ա ն զ օ ր ա վ ա ր ի նկարը բազմեցրած, որի պռունկներին պարզ նշմարւում էին խատակ ճանճի հետքեր։

Քահանան շուրջառը գցեց, խաչը ձեռն առնելով սկսեց բարձրաձայն, հանդիսաւոր կերպով օրհնել։ Մի ակնթարթում տիրացուն մօտիկ խոհանոցից բուրվառը կրակ գցած մօտեցաւ տէրտէրին, խունկ ածել տուեց ու կլկլալէ ձայնակցեց երդուող շարականին. առաջին անգամն էր, որ այդ մխոտ օթեանի անկիւնները խնկի հոտ էին առնում։ Գլըդած աչքերով բաց դռան առաջ կանգնած բակի մանուկները լսում էին երգեցողութիւնը և ուշադիր դիտում թէ ինչ է կատարւում ներսը։ Խոհարարուհիք, գերման լփոշ աղջիկներ, որոնք ամեն օր զուարճախօս Վարդանի անմեղ կատակները լսում ու հրհռալի ծիծաղում էին, այժմ լըջացած ժողովուել էին լուացքատան դռան առջև ու հետաքրքրութեամբ նայում էին երգեցողութեան ու արարողութեան։ Պարտէզի կողմից բակ մտնելով Վարդանը ու իրա սենեակի միջից ժամի երգեցողութիւն լսելով մնաց ապշած. այսպիսի անակնկալ բան մտքով չէր անցկացրել։ «Փա՛ռք քեզ Աստուած, երազ բան եմ տեսնում,» շշնջաց ինքն իրան Վարդանը, վերցրած գլխարկով քրտնքած ճակատը սրբեց ու մօտեցաւ շէմքին, խնկի թանձր հոտից հոգին փառաւորուեց, յոգնած դէմքը պայծառացաւ. խոր գլուխ տալով ծանօթ քահանային դարձեալ ինքն իրան մրմնջաց «վա՛յ քու աջիդ ղուրբան, զարիբների տէրտէր, քու ոտացը մեռնեմ.։ Այդ ասելուց ետ մանուկների շարքը պատռելով մօտեցաւ իրա տախտին ու հոգեզմայլ վիճակում ականջ էր դնում իրա համար կարդացուող Աւետարանին։ Վերջը քահանայի մօտեցրած խաչը համբուրելուց ետ զգացուած խօսեց.

— Տէրտէր ջան, էսօր դու ինձ սաղ դունեի մէջ նախանձի առարկայ շինեցիր։ Էս քաղաքում առաջին անգամն է, որ էսպէս փառքի արժանանում եմ։ Իմ հարուստ խոզէինին հասկացրիր, տէրտէր ջան, որ աղքատ դուրնիկն էլ մ ա ր դ է. մեռնեմ լուսաւորչի զօրութեանը։ Օրէս եդ թէկուզ խոզէինս չը պահի էլ ինձ, ցաւ չի ինձ համար, Աստուած կը պահի... տուր էդ խաչն ու Աւետարանը մէկ էլ համբուրեմ, դրանց զօրքին մատաղ։

Քահանան նշխարք դրեց Աւետարանի վրայ։ Վարդանը աչքերը ուրախ չռելով խօսեց.

— Վա՛ւ, տէրտէր ջան, ինձ, դուրնիկիս, օրհնեալ նշխարք էլ ես տալիս։

Մի վայրկեան մտահոգ մնալուց ետ անմեղ ժպտով խօսքը շարունակեց Վարդանը.

— Մեր երկրում տուն օրհնող տէրտէրին հաւկիթով էլ ռազի են անում, բայց էս շէն քաղաքի բանն ուրիշ է։ Հիմի ես, տէրտէր ջան, չեմ իմանում քանի արասի տամ, որ քո սուրբ ամագի տակից դուրս գամ։

Քահանան ձեռը գրպանից նշխարքի վրայ դնելով կարծես գրաղուած մտածում էր՝ իրանի թէ մեր բարձր դասը այսչափ անկեղծութիւն, այսչափ հաւատ ունենար։ Երբ տեսաւ որ Վարդանը տրորուելով դարձեալ խօսք է գցում վճարելիքի մասին, սրտանց ժպտաց ու հայրաբար հրամայեց.

— Շատ մի խօսիլ, Վարդա՛ն, համբուրիր Աւետարանը ու նշխարքի տակ ինչ որ կայ հետը վերցրու։

Դուրնիկը պինչը միամիտ մօտեցրեց Աւետարանը համբուրելու, նշխարքի տակ ճերմակ ռուբլանոց նկատելով խրտնած յետ կացաւ ու գոչեց.

— Վա՛ւ, աջիդ մատաղ, տէրտէր, ինձնից փարայ ստանալու տեղ դու ինձ փար[illegible]տաս...

— Վարդան, [illegible]ասում եմ, շատ մի խօսիլ, հրամանը կըրկնեց քահանան ժպտալով, ինչպէս ասում եմ, դու էնպէս արա։ Տես, տիրացու Գէորգը ինչ որ տալիս է, էն էլ վերցրու ու շուտով Անուշաւանիդ համար ընծաներ ուղարկիր։

Սիրտը լցուելուց Վարդանը դընուել էր, խօսել չէր կարում, հազիւ էր լացը զսպում. նրա կոկորդը սղմւում էր, շունչը կտրւում, շրթունքները դողդողում։ Աշխատեց իրան զսպած պահել, որ ժողովուած մանուկները, խոհարարուհիք իրա արտասուքները չը տեսնեն. բայց պաշարող բաղցի, երջանկաւէտ յուզմունքն աւելի զօրեղ հանդիսացաւ քան թէ նրա ջլապինդ կազմուածքը։ Հէնց որ զարիբների տէրտէրը «օրհնեալ լինիս, Վարդան» ասելով ոտը դուրս դրեց, Վարդանն անկարող եղաւ փխրուած սիրտը պահել, արտասուքները ներքևից վըրխկալէ ողողեցին աչքերը, խեղճը խենթի պէս վազեց բակը, կէս ծիծաղելով, կէս հեկեկալով վրայ ընկաւ, սկսեց փոխ առ փոխ համբուրել մէկ քահանայի, մէկ տիրացուի ձեռները, մխիթարուած սրտով կրկնելով «աջիդ ղուրբան, զարիբների տէրտէր, մեռնեմ արևիդ, տիրացու Գէորգ», առանց ուշ դարձնելու մանուկների ծիծաղին ու խոհարարուհիների քրքջոցին։

Թամալեանց Ս.

---

## Ս Ե Ր Վ Ա Ն Տ Է Ս

*(1547—1616—1916)*

Ապրիլի 23-ին լրանում է ընդհանուր գրականութեան երկու խոշոր ներկայացուցիչների մահուան 300-ամեակը։ Համարեա միաժամանակ են ապրել և միևնոյն տարին ու օրը վախճանուել վերածնութեան (Ռէնէսանսի) երկու մեծ բանաստեղծները—Սերվանտէս և Շէքսպիր (1554—1616)։ Անտարակոյս, երկու հսկաներից մեծագոյնը Շէքսպիրն է, որ իր բազմակողմանի հանճարով այդ կենսալից, եռուն դարի կեանքը պատկերացրել է մի շարք անմահ երկերով։ Սակայն ոչ նուազ չափով մեծ է և առաջինը—անմահ «Դոն-Քիշոտի» անմահ հեղինակը։

Սերվանտէս Վերածնութեան—Ռէնէսանսի մեծ դարի մեծ զաւակն է։

գաւորում ամեն տեղ։ Արաբների սոսկալի յաջողութիւնները խանգարելու և անմեղութիւնը պաշտպանելու համար էլ հաստատուեց թափառական ասպետութիւնը. այս է միայն, որ որոշ չափով պաշտպանում է այրիներին և որբերին։ Ահա այդ դասին եմ պատկանում ես...

Վ. Խորէն

(Շարունակութիւնը հետեւեալ անգամ)։

---

## ՓՈՍՏԱՐԿՂ

Օձուն (Լոռի), պ. Խ. Գէորգեանին.—Խմբագրութիւնս չի ստացել ձեր «Վէսեքա» յօդուածը Վանի մասին։

Խմբագիր՝ ՍԱՄՍՈՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆՑ
Հրատարակիչ Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

# Յայտարարութիւններ



Տպարան «ՊՐՕԳՐԷՍ», Լ. Մ. Պօղոսեանի — Типографія „Прогрессъ", Лорисъ-Меликовск. 1 — Дозволено военнной цензурой